Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 4 ՄԱՐՏ 1959

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։




# ԿՈՄՈՒՆԻԶՄ ԿԱՌՈՒՑՈՂՆԵՐԻ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

1959 թվականի հունվարի 27-ից մինչև փետրվարի 5-ը մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում տեղի ունեցավ ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարը։

Այդ օրերին սովետական մարդկանց մտքերը և սրտերը, ամբողջ աշխարհի աշխատավորների, բոլոր ազնիվ մարդկանց հայացքները բևեռված էին դեպի Մոսկվա՝ Կրեմլյան Մեծ պալատը, որտեղ տեղի էին ունենում համագումարի նիստերը։

ՍՄԿՊ XXI համագումարը հսկայական խանդավառությամբ լսեց և քննարկեց ընկեր Ն. Ս. Խրուշչովի «ՍՍՌՄ-ում ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին» զեկուցումը, որի մեջ ընդհանրացված է մեր երկրում սոցիալիստական շինարարության հարուստ փորձը, շարադրված է Սովետական Միությունում կոմունիզմի հետագա շինա-

բարության, մեր երկրի էկոնոմիկայի, կուլտուրայի հզոր վերելքի, աշխատավորների կենսամակարդակի բարձրացման հոյակապ ծրագիրը:

Համագումարը միաձայն հավանություն տվեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման կոնտրոլ թվերի վերաբերյալ ընկ. Խրուշչովի թեզիսներին և զեկուցմանը, պարտիային ու ժողովրդին զինեց մեր հաղթական առաջընթացի, կոմունիզմի ծավալուն կառուցման կոնկրետ ծրագրով:

Պարտիայի XXI համագումարը դարաշրջանային նշանակություն ունեցող իրադարձություն է մեր ժողովրդի, Կոմունիստական պարտիայի կյանքում, այն պատմության մեջ մտավ որպես կոմունիզմի կառուցողների համագումար:

Պարտիայի XX համագումարից հետո սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ մեծ հաջողություններ է ձեռք բերել էկոնոմիկայի, կուլտուրայի զարգացման ասպարեզում: Այդ ժամանակաշրջանում պարտիայի ձեռնարկած մի շարք կարևոր միջոցառումները արդյունաբերության և շինարարության վերակառուցման, գյուղատնտեսության բազմակողմանի զարգացման, ժողովրդական կրթու-



թյան վերակառուցման, սոցիալիստական դեմոկրատիայի ամրապնդման և ընդլայնման ուղղությամբ արդեն տվել են իրենց հիանալի արդյունքները:

***

Սովետական ժողովուրդը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հասել է այնպիսի բարձունքի, իրագործել է տնտեսական և հասարակական կյանքի բոլոր բնագավառների այնպիսի վիթխարի վերափոխումներ, որոնք մեր երկրին հնարավորություն են տալիս այժմ թևակոխելու իր զարգացման նոր, կարևորագույն՝ **կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը:**

Առաջիկա յոթնամյակի արմատական պրոբլեմը կապիտալիզմի հետ սոցիալիզմի տնտեսական խաղաղ մրցության մեջ առավելագույն ժամանակ շահելու պրոբլեմն է: Կոնտրոլ թվերով նախատեսվում են արդյունաբերության բոլոր ճյուղերում, առանձնապես ծանր ինդուստրիայում արտադրության զարգացման բարձր տեմպեր և բացարձակ մեծ աճ: Յոթնամյակում այնքան արդյունաբերական արտադրանք է արտադրվելու, որքան Սովետական իշխանության անցած բոլոր 41 տարիներին: Արդյունաբերության հա-

մախառն արտադրանքի ծավալը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ավելանալու է մոտավորապես 80 տոկոսով։ Յոթնամյակի ընթացքում արդյունաբերական արտադրանքի ծավալի մեծացումը հավասար կլինի վերջին 20 տարվա արտադրանքի աճին։

Նախատեսված է չուգունի արտադրությունը 1965 թվականին հասցնել 65—70 միլիոն տոննայի, պողպատինը՝ 86—91 միլիոն տոննայի, գլանվածքինը՝ 65—70 միլիոն տոննայի, ապրանքային երկաթաքարինը՝ 150—160 միլիոն տոննայի, ալյումինի արտադրությունն ավելացնել 2,8 անգամ, ռաֆինացված պղնձինը՝ 1,9 անգամ։

Յոթնամյակում առանձնահատուկ տեղ է տրվում քիմիական արդյունաբերության զարգացմանը։ Քիմիական արտադրանքի արտադրության ընդհանուր ծավալը պետք է ավելանա գրեթե 3 անգամ, այդ թվում արհեստական թելի արտադրությունը՝ գրեթե 4 անգամ, պլաստմասսայինը և ձյութինը ավելի քան 7 անգամ, արհեստական պարարտանյութերինը՝ մոտ 3 անգամ։

Վառելիքի արդյունաբերության բնագավառում նախատեսվում է նավթի հանույթը 1965 թվականին հասցնել 230—240 միլիոն տոն-



նայի, կամ կաճի ավելի քան 2 անգամ, գազինը՝ տարեկան 150 միլիարդ խորանարդ մետրի, կամ կաճի 5 անգամ, ածխի հանույթը հասցվելու է 600—612 միլիոն տոննայի։ Արագ տեմպով զարգանալու է մեքենաշինությունը իր բոլոր ճյուղերով և ամենից առաջ ծանր մեքենաշինության, սարքաշինության, ավտոմատիկայի, էլեկտրոնիկայի միջոցների արտադրությունը։

Յոթնամյակի ընթացքում մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքի արտադրությունն ավելանալու է մոտ 2 անգամ։

Գյուղատնտեսության բնագավառում յոթնամյակի գլխավոր խնդիրը արտադրության այնպիսի մակարդակի հասնելն է, որը թույլ կտա լիովին բավարարել պարենի ասպարեզում բնակչության և հումքի ասպարեզում արդյունաբերության պահանջմունքները և գյուղատնտեսական մթերքների ասպարեզում պետության մյուս կարիքները։

Յոթնամյակի ընթացքում գյուղատնտեսության համախառն արտադրանքն ընդհանուր առմամբ ավելանալու է 1,7 անգամ։ Արտադրանքի առանձին տեսակների արտադրությունը յոթնամյակի վերջերին հասցվելու է հետևյալ չափերի. հացահատիկինը՝ 10—11 միլիարդ փթի, շաքարի ճակնդեղինը՝ 76—84

միլիոն տոննայի, բամբակինը՝ 5,7—6,1 միլիոն տոննայի, մսինը՝ (սպանդանոցային քաշով) 16 միլիոն տոննայի, կաթինը՝ 100—105 միլիոն տոննայի, կարտոֆիլինը՝ 147 միլիոն տոննայի, բանջարեղենինը՝ բնակչության պահանջմունքները լրիվ բավարարող չափերի։

Հողագործության բնագավառում առաջիկա տարիներին գլխավոր գիծը այսուհետև նույնպես մնում է հացահատիկի արտադրության ըստ ամենայնի ավելացումը, որը գյուղատնտեսական ամբողջ արտադրության հիմքն է։ Այժմ ստեղծված են բոլոր պայմանները առաջիկա տարիներին հացահատիկային կուլտուրաների մեկ հեկտարի բերքատվությունը միջին հաշվով 3—4 ցենտներով ավելացնելու համար։ Անասնաբուծության բնագավառում յոթնամյակի գլխավոր խնդիրը մսի, կաթի, բրդի և ձվի արտադրության ավելացումն է։

Յոթնամյակում կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը կկազմի մոտ 3 տրիլիոն ռուբլի։ Այդ նշանակում է, որ յոթ տարում կներդրվեն մոտավորապես այնքան միջոցներ, որքան ներդրվել է Սովետական իշխանության բոլոր տարիներին։

Արդյունաբերության մեջ կապիտալ ներ-



դրումները անցած յոթնամյակի համեմատությամբ կաճեն մոտ 2 անգամ, գյուղատնտեսության մեջ այն կկազմի մոտ 500 միլիարդ ռուբլի, անցած յոթնամյակի ներդրումների ծավալը գերազանցելով մոտ 2 անգամ։

Յոթնամյա պլանի կատարումը է՛լ ավելի կհզորացնի Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը՝ սոցիալիստական ազգերի համագործակցության, բազմազգ սոցիալիստական պետության ուժի և հզորության աղբյուրը։

«Մեր պլաններում,— ասված է ընկ. Խրուշչովի զեկուցման մեջ,— վառ կերպով արտահայտված է լենինյան ազգային քաղաքականությունը, որը լայն հնարավորություններ է ապահովում բոլոր ժողովուրդների էկոնոմիկայի և կուլտուրայի համակողմանի զարգացման համար»։

Դա իր նոր հաստատումն է գտնում ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերում։ Յոթնամյա պլանով նախատեսվում է սովետական բոլոր ռեսպուբլիկաների տնտեսության հսկայական աճ։ Յուրաքանչյուր ռեսպուբլիկայում զարգացվում են տնտեսության նախ և առաջ այն ճյուղերը, որոնց համար

կան բնական և տնտեսական առավել նպաստավոր պայմաններ։

Յոթնամյակը հոյակապ հեռանկարներ է բացում Սովետական Հայաստանի էկոնոմիկայի և կուլտուրայի աննախընթաց զարգացման համար։ Յոթնամյա պլանի կոնտրոլ թվերով նախատեսվում է Հայկական ՍՍՌ արդյունաբերական արտադրության աճ 2,2 անգամ, գյուղատնտեսության մթերքների արտադրությունը կաճի 1,7 անգամ։

Հատկապես արագ տեմպերով կզարգանան մետալուրգիան, քիմիան, էլեկտրատեխնիկան և ճշգրիտ մեքենաշինությունը։ Ռաֆինացված պղնձի արտադրությունը յոթնամյակում կավելանա 5 անգամ, մոլիբդենինը՝ 3,5 անգամ, ճշգրիտ սարքերի և ռադիոտեխնիկական առարկաների արտադրությունը՝ 8,7 անգամ, ունիկալ հաստոցներինն ու գործիքներինը՝ 7,4 անգամ։

Ստեղծվում են արտադրական պրոցեսների ավտոմատացման միջոցներ թողարկող ձեռնարկություններ, նոր սարքաշինական գործարաններ և այլն։

Է՛լ ավելի կբարելավվի հողագործության ստրուկտուրան։ Գլխավոր ուշադրությունը կնվիրվի անասնաբուծության, խաղողագործության և պտղաբուծության զարգացմանը։



1965 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, մսի արտադրությունը կավելանա 1,7 անգամ, կաթինը՝ 1,6 անգամ, բրդինը՝ 2 անգամ, խաղողի արտադրությունը՝ 2,8 անգամ, պտուղներինը՝ 2,7 անգամ։

Լուրջ ուշադրություն է դարձվելու բնակարանային շինարարությանը, ինչպես նաև աշխատավորների կուլտուր-կենցաղային սպասարկման հարցերին։

***

Էկոնոմիկայի բոլոր ճյուղերի հետագա հզոր վերելքի և ծանր ինդուստրիայի առավել աճի հիման վրա յոթնամյակում ապահովվելու է աշխատավորների կենսամակարդակի անընդհատ բարձրացումը։

Մեզ մոտ ստեղծված են բոլոր պայմանները, որպեսզի ամենամոտ ժամանակներս սովետական ժողովուրդն է՛լ ավելի լավ ապրի, ավելի լրիվ բավարարի իր նյութական ու հոգևոր պահանջմունքները։

Յոթնամյա պլանով նախատեսվում է ազգային եկամտի աճ 62—65 տոկոսով և այդ հիման վրա աշխատավորների ռեալ եկամուտների լուրջ ավելացում, աշխատանքային օրվա տևողության կրճատում և շաբաթվա մեջ աշխատանքային օրերի թվի նվազեցում, ժողովրդական սպառման ապ-

բանջների արտադրության ավելացում և դրանց որակի բարելավում, բնակարանային շինարարության լայն թափ, բնակչության հասարակական, կուլտուրական և կենցաղային սպասարկման զգալի բարելավում։ Դրամական աշխատավարձի, կենսաթոշակների և նպաստների աճի, հասարակական սննդի գների իջեցման շնորհիվ բանվորների ու ծառայողների ռեալ եկամուտները մեկ աշխատողի հաշվով, մինչև յոթնամյակի վերջը կավելանան 40 տոկոսով։ Ընդ որում նախատեսվում է ցածր վարձատրվող բանվորների ու ծառայողների նվազագույն աշխատավարձը ամսական 270—350 ռուբլուց հասցնել 500—600 ռուբլու։

Կոլտնտեսականների ռեալ եկամուտները նույնպես կաճեն մոտ 40 տոկոսով։

Սոցիալիստական էկոնոմիկայի հաջողությունների և աշխատանքի արտադրողականության աճման շնորհիվ, մեր երկրում ստեղծված են բոլոր պայմանները մոտակա տարիներին բնակչությունից գանձվող հարկերից հրաժարվելու համար։

Յոթնամյակի վերջում ՍՍՌՄ-ում կլինի աշխարհում ամենակարճ աշխատանքային օրը և ամենակարճ աշխատանքային շաբաթը, է՛լ ավելի բարձր մակարդակի կհասնի բնակչության բարեկեցությունը։



Այս բոլոր միջոցառումների կենսագործումը կլինի մեր երկրի աշխատավորների նոր, մեծագույն նվաճումը, սովետական ժողովրդի բարօրության նկատմամբ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության անդուլ հոգատարության վառ արտահայտությունը։

Ժամանակակից պայմաններում պարտիան հատուկ ուշադրություն է նվիրում երիտասարդության կոմունիստական դաստիարակությանը, ուսուցումը կյանքի հետ կապելու խնդիրներին։

Յոթնամյակում խոշոր աշխատանք է կատարվելու կյանքի հետ դպրոցի կապն ուժեղացնելու և ժողովրդական կրթության ամբողջ սիստեմի վերակառուցման ուղղությամբ։ Նախատեսվում է զգալիորեն ընդարձակել միջնակարգ կրթությունը, երեկոյան և հեռակա միջնակարգ ու բարձրագույն մասնագիտական կրթությունը։ Սովորողների թիվը տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցներում յոթնամյակի վերջում հասցվելու է 38—40 միլիոն մարդու, գիշերօթիկ դպրոցներում սովորողների թիվը կհասնի 2 միլիոն 500 հազարի, մանկապարտեզներում ընդգրկված երեխաներինը՝ 4 միլիոն 200 հազարի։

Յոթնամյա պլանով նախատեսվում է ավելի բարելավել բարձրագույն կրթության տեր մասնագետների պատրաստումը։

1959—1965 թվականներին բուհերը երկրին կտան 2 միլիոն 300 հազար մասնագետ, նախորդ յոթնամյակում պատրաստած 1 միլիոն 700 հազար մարդու փոխարեն։ Բարձրագույն կրթության տեր մասնագետների ընդհանուր թիվը 1965 թվականին կկազմի ավելի քան 4,5 միլիոն մարդ, կամ 1958 թվականի համեմատությամբ կաճի 1,5 անգամ։

Յոթնամյակում բուռն զարգացում է ապրելու սովետական գիտությունը։ Հսկայական միջոցներ են ծախսվելու գիտական նոր հիմնարկների շինարարության, նորագույն սարքավորումների համար։ Գիտական ուժերը լուծելու են տեսական ու պրակտիկ մեծ նշանակություն ունեցող խնդիրներ։

Յոթնամյա պլանի կատարման շնորհիվ վճռական քայլ կարվի ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդրի՝ բնակչության մեկ շընչին ընկնող արտադրանքի արտադրությամբ առավել զարգացած կապիտալիստական երկրներին պատմական կարճ ժամանակում հասնելու և նրանցից առաջ անցնելու խնդրի իրականացման գործում։

Յոթնամյա պլանի կատարման շնորհիվ



Սովետական Միությունը բնակչության մեկ շնչի հաշվով կարտադրի արդյունաբերական ավելի շատ արտադրանք, քան այժմ արտադրում են Անգլիան և Արևմտյան Գերմանիան։

Արտադրանքի որոշ ամենագլխավոր տեսակների բացարձակ արտադրությամբ ՍՍՌՄ-ը կգերազանցի, իսկ ուրիշ արտադրանքների արտադրությամբ կմոտենա ԱՄՆ-ի արդյունաբերության արտադրության ներկա մակարդակին։ Ամբողջությամբ վերցրած և բնակչության մեկ շնչին ընկնող գյուղատնտեսական կարևորագույն մթերքների արտադրությամբ ևս ՍՍՌՄ-ը կգերազանցի ԱՄՆ-ի ժամանակակից մակարդակը։

Եթե հաշվելու լինենք ըստ բնակչության շնչի, ապա յոթնամյա պլանի կատարումից հետո հավանաբար կպահանջվի ևս հինգ տարի, որպեսզի արդյունաբերական արտադրանքի արտադրությամբ հասնենք և անցնենք ԱՄՆ-ին։

«Հետևաբար, մինչև այդ ժամանակ,— ասված է ընկ. Խրուշչովի զեկուցման մեջ,— գուցե և ավելի շուտ, Սովետական Միությունը աշխարհում առաջին տեղը դուրս կգա ինչպես արտադրության բացարձակ ծավալով, այնպես էլ բնակչության մեկ շնչին

ընկնող արտադրանքի արտադրությամբ։ Դա սոցիալիզմի համաշխարհային պատմական հաղթանակը կլինի միջազգային ասպարեզում կապիտալիզմի հետ խաղաղ մրցության մեջ»։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարը միջազգային հսկայական նշանակություն ունի։ Նրա աշխատանքին մասնակցում էին աշխարհի 72 երկրների մարքս-լենինյան պարտիաների պատվիրակություններ։ Դա միջազգային կոմունիստական շարժման պատմության ընթացքում նրա ամենալայն ներկայացուցչությունն էր։

Համագումարը նշեց, որ բուռն կերպով զարգանում է համաշխարհային սոցիալիստական սիստեմի բոլոր երկրների էկոնոմիկան։ Սոցիալիստական ինդուստրացման և գյուղատնտեսության կոոպերացիայի շնորհիվ ժողովրդական դեմոկրատիայի որոշ երկրներ արդեն թևակոխել են սոցիալիզմի կառուցումն ավարտելու ժամանակաշրջանը, իսկ մյուս երկրներում հաջողությամբ առաջ է ընթանում սոցիալիստական հասարակարգի հիմքերի ստեղծումը։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության յոթնամյա պլանի կատարման ու գերակատար-



ման, ինչպես նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրների էկոնոմիկայի զարգացման բարձր տեմպերի շնորհիվ, համաշխարհային սոցիալիստական սիստեմի երկրները կարտադրեն ամբողջ համաշխարհային արդյունաբերական արտադրանքի ավելի քան կեսը։

Դրանով իսկ կապահովվի կապիտալիզմի համաշխարհային սիստեմի նկատմամբ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի գերազանցությունը՝ նյութական արտադրության մեջ։

***

Մարքսիզմ-լենինիզմի հետագա զարգացման ասպարեզում խոշոր ավանդ է XXI համագումարում տեսական մի շարք հարցերի լուսաբանումը։ Ընկ. Խրուշչովի զեկուցումը ստեղծագործական մարքսիզմի, կոմունիստական շինարարության պրակտիկայի, միլիոնավոր մասսաների փորձի հետ տեսության կենդանի և սերտ կապի փայլուն օրինակ է։ Մարքսիզմ-լենինիզմի գանձարանում խոշոր ներդրում են ընկ. Խրուշչովի զեկուցման կարևոր սկզբունքային տեսական դրույթները կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում սոցիալիզմից կոմունիզմին անցնելու օրինաչափությունների,

հասարակության բոլոր անդամների միջև նյութական ու հոգևոր արժեքների բաշխման, սոցիալիստական սեփականության կոլտնտեսային և համաժողովրդական ձևերի զարգացման և մերձեցման, հասարակության քաղաքական կազմակերպման, պետական կառուցվածքի և կառավարման հարցերի մասին։

Զեկուցման տեսական նոր դրույթներն ու եզրակացությունները արված են ՍՍՌՄ-ում սոցիալիստական շինարարության բազմահարուստ փորձի, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հաջողությունների ընդհանրացման հիման վրա։

Պարզաբանելով կոմունիստական հասարակության երկու փուլերի, սոցիալիզմից կոմունիզմին անցնելու օրինաչափությունների հարցը, ընկեր Խրուշչովը նշեց, որ սոցիալիզմից կոմունիզմին անցումը պատմական օրինաչափ պրոցես է, որը չի կարելի կամայականորեն խախտել կամ շրջանցել, որ սոցիալիզմի և կոմունիզմի միջև որևէ պատնեշ չկա, կոմունիզմն աճում է սոցիալիզմից, որ անցումը կոմունիզմին չի կարելի համարել դանդաղ շարժում, այն կարող է արագացվել նյութական արտադրության բարձր մակարդակի հիման վրա։ Ընկեր



Խրուշչովը ասաց. «Չի կարելի շտապել և հապճեպ մտցնել այն, ինչ դեռ չի հասունացել։ Դա կհանգեցներ մեր գործի խեղաթյուրման և վարկաբեկման։

Բայց չի կարելի կանգ առնել նաև ձեռք բերածի վրա, քանի որ դա կհանգեցներ լճացման»։

Զեկուցման այդ բաժնում ընկ. Խրուշչովը մանրամասն լուսաբանում է նաև հասարակության կողմից արտադրված նյութական բարիքները հասարակության բոլոր անդամների միջև բաշխելու պրոբլեմը, սոցիալիստական սեփականության համաժողովրդական և կոլտնտեսային ձևերի զարգացման ու մերձեցման ուղիների հարցը և բազմաթիվ այլ հարցեր։

«Տնտեսական զարգացման պրոբլեմներին զուգընթաց,— ասված է ընկ. Խրուշչովի զեկուցման մեջ,— հրամայաբար ծառանում են նաև կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում հասարակության քաղաքական կազմակերպման, պետական կառուցվածքի ու կառավարման հարցերը»:

Մարքսիզմը սովորեցնում է, որ կոմունիզմի օրոք պետությունը կմահանա, հասարակական կառավարման ֆունկցիաները կկորցնեն իրենց քաղաքական բնույթը և կվերած-







վեն հասարակության գործերի անմիջական ժողովրդական կառավարման։

ՍՍՌՄ-ի թևակոխումը կոմունիզմի ծավալուն շինարարության շրջանը ենթադրում է սովետական պետականության կատարելագործում և սովետական դեմոկրատիայի հետագա զարգացում, աշխատավորների ակտիվության և ինքնագործունեության բարձրացում, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի, ժողովուրդների բարեկամության ամրապնդում։

Կոմունիստական շինարարության նոր էտապում պետական օրգանների ֆունկցիաների զգալի մասը աստիճանաբար պետք է անցնի հասարակական կազմակերպություններին։ Արհմիությունները, կոմերիտմիությունը, կոոպերատիվ կազմակերպությունները և մյուս մասսայական կազմակերպությունները, սպորտային, գիտատեխնիկական, ստեղծագործական միությունները, որոնցում ընդգրկված են տասնյակ միլիոնավոր սովետական մարդիկ, արտացոլում են սոցիալիստական հասարակարգի խոր դեմոկրատիզմը, զարգացնում են ժողովրդական նախաձեռնությունը և մասսաների ինքնագործունեությունը։

Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, և



պատմական փորձով հաստատված է, որ սոցիալիստական ռևոլյուցիայից հետո պետությունը պահպանվում է ոչ միայն սոցիալիզմի ժամանակ, այլև որոշակի պատմական պայմաններում նաև կոմունիզմի ժամանակ, քանի դեռ գոյություն ունեն կապիտալիստական պետություններ և վերացված չէ մեր երկրի և սոցիալիզմի երկրների վրա նրանց հարձակման վտանգը։

Արդի դարաշրջանում, երբ սոցիալիզմի կառուցումը դուրս է եկել մեկ երկրի շրջանակներից, երբ ստեղծվել է համաշխարհային սոցիալիստական սիստեմ, երևան են եկել նաև սոցիալիզմի ու կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարի տեսական նոր հարցեր: Այդ հարցերից մեկը սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակի հարցն է։

«Այժմ աշխարհում չկան այնպիսի ուժեր, — ասաց ընկեր Խրուշչովը, — որոնք կարողանային մեր երկրում վերականգնել կապիտալիզմը, խորտակել սոցիալիստական լագերը։ Սովետական Միությունում կապիտալիզմի վերականգնման վտանգը բացառված է։ Դա նշանակում է, որ սոցիալիզմը հաղթանակել է ոչ միայն լիովին, այլև վերջնականապես»:

Պարզություն մտցվեց կոմունիզմին անցնելու ուղիների հարցի մեջ ոչ միայն մեր երկրի, այլև սոցիալիզմի երկրների համար։

Սոցիալիզմի երկրները, հաջողությամբ օգտագործելով սոցիալիստական կարգերի հնարավորությունները, այս կամ այն չափով միաժամանակ կթևակոխեն կոմունիստական հասարակարգի բարձրագույն փուլը։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հետագա աճման ու ամրապնդման ընթացքում սոցիալիստական բոլոր երկրները կզարգանան ավելի ու ավելի հաջող կերպով, առավել արագ տեմպերով նախադրյալներ կստեղծվեն կոմունիզմի առաջին փուլից նրա երկրորդ փուլին անցնելու համար։

***

Կոմունիզմի կառուցման գործում սովետական ժողովրդի ձեռք բերած վիթխարի հաջողությունների աղբյուրը Կոմունիստական պարտիայի իմաստուն քաղաքականությունն է, պարտիայի շարքերի միասնությունը, լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը նրա սերտ համախմբվածությունը։ Համագումարը վառ կերպով ցույց տվեց, թե ինչքան է աճել պարտիայի ղեկավար դերը կոմունիստական շինարարության մեջ, երկրի պետական, հասարակական, տնտեսական



ու կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում։ Պարտիան է՛լ ավելի է մերձեցել ժողովրդին, ավելի է հարազատ դարձել նրան, անշեղորեն ամրապնդվել է նրա կապը մասսաների հետ, հետագա զարգացում են ստացել պարտիական կյանքի լենինյան նորմաները։

Պարտիան անդուլ պայքար է մղում հնի, իր դարն ապրածի, մեր զարգացմանն արգելակողի դեմ, հանուն նորի, առաջավորի, մեր առաջընթացն արագացնողի հաղթանակի։

Արդյունաբերության ու շինարարության կառավարման վերակառուցումը, միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնումը, տասնյակ միլիոնավոր հեկտար խամ ու խոպան հողերի յուրացումը, ՄՏ կայանների վերակազմումը, պլանավորման նոր կարգը կոլտնտեսություններում, քիմիական արդյունաբերության արագ զարգացումը, կենսաթոշակների արմատական բարելավումը, բանվորական օրվա կրճատումը և աշխատավարձի կարգավորումը, ժողովրդական կրթության սիստեմի վերակառուցումը և մյուս միջոցառումները մեր պարտիայի իմաստության, նրա անսպառ նախաձեռնության և անսահման էներգիայի վկայությունն է։

Արտաքին քաղաքականության մեջ պարտիան անշեղորեն վարել է տարբեր հասարակական ու քաղաքական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան կուրս, հետևողականորեն պայքարել է խաղաղության պաշտպանման համար ամբողջ աշխարհում, որի համար էլ արժանացել է երկրագնդի բոլոր ազնիվ մարդկանց մեծագույն վստահությանը և համակրանքին։

ՍՄԿՊ XXI համագումարը միահամուռ հավանություն տվեց Սովետական կառավարության լենինյան արտաքին խաղաղասիրական քաղաքականությանը և նրա բոլոր այն միջոցառումներին, որոնք ուղղված են գերմանական հարցի խաղաղ լուծման նպատակին, միջուկային զենքի փորձարկումները դադարեցնելու և այդ զենքն արգելելու, զինաթափման, սառը պատերազմի դադարեցման, կառավարությունների ղեկավարների խորհրդակցություն հրավիրելու շուրջը համաձայնության հասնելու նպատակին։

Համագումարը հանձնարարեց պարտիայի Կենտրոնական Կոմիտեին և Սովետական կառավարությանը այսուհետև ևս հետևողականորեն պայքարել խաղաղության ու ժողովուրդների անվտանգության նպատակին



ուղղված այդ և մյուս առաջարկների իրականացման համար։

Պարտիայի XXI համագումարի աշխատանքը բացառիկ ուժով ցույց տվեց, որ պարտիան այժմ ավելի, քան երբևէ, միաձույլ է ու միասնական, համախմբված լենինյան Կենտկոմի շուրջը։ Կենտկոմը սրբությամբ կատարելով մեծ Լենինի ցուցումները, աչքի լույսի պես պահպանում է պարտիական շարքերի անաղարտությունն ու միասնությունը։

Համագումարը միահամուռ հավանություն տվեց ՍՄԿՊ Կենտկոմի վճռական միջոցառումներին, որը մերկացրեց ու ջախջախեց Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի, Բուլգանինի և Շեպիլովի հակապարտիական խմբին, որը կտրված էր կյանքից, ժողովրդից, դարձել էր մեր առաջընթացն արգելակող մի ուժ և փորձում էր քայքայել պարտիայի միասնությունը, վիժեցնել պարտիայի XX համագումարի որոշումների կատարումը, պարտիան և երկիրը շեղել լենինյան ուղուց։ Ջախջախելով հակապարտիական խումբը, պարտիան է՛լ ավելի ամուր համախմբեց իր շարքերը Կենտկոմի շուրջը, մարքսիզմ-լենինիզմի դրոշի ներքո։

Այժմ բոլորը տեսնում են, որ լենինյան պարտիան պատվով է կատարում կոմունիզմի համար սովետական ժողովրդի պայքարը կազմակերպողի և ոգեշնչողի իր դերը։

Կոմունիստական պարտիան մեր սոցիալիստական հասարակության ուղեղն է, կոմունիստական շինարարության մարտական շտաբը։

Պարտիայի ուժը՝ դա ժողովրդի ուժն ու հզորությունն է, իսկ նրա իմաստությունը և կամքը՝ աշխատավորական լայն մասսաների իմաստությունն ու կամքն է։

«Այն յոթնամյակը,— ասաց իր զեկուցման մեջ ընկ. Խրուշչովը,— որ մենք թևակոխել ենք, նոր, կարևոր, կարելի է ասել, վճռական սահմանագիծ է մեր երկրի պատմական զարգացման ճանապարհին։ Կոմունիստական պարտիան, ամբողջ սովետական ժողովուրդը լի են հաստատ վստահությամբ, որ իրենք կգրավեն նաև այդ սահմանագիծը ու դուրս կգան լայն բարձրավանդակ, և այդ ժամանակ կբացվեն նոր հորիզոններ, այդ ժամանակ ավելի հեշտ կլինի առաջ ընթանալը»։

---

## ԶՐՈՒՅՑ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԻ ՄԱՍԻՆ

Շ. ՊԵՏՐՈՍՅԱՆ
Իրավաբանական գիտությունների թեկնածու

Սովետական դեմոկրատիան արմատապես տարբերվում է բուրժուական դեմոկրատիայից։ Սովետական սոցիալիստական դեմոկրատիան դեմոկրատիայի բարձրագույն ձևն է։ Այդ դեմոկրատիան իսկական ազատություն է ապահովում ամբողջ ժողովրդի համար, արտացոլելով նրա ամենանվիրական իղձերը, պաշտպանելով նրա հարազատ շահերը։

ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարում տված զեկուցման մեջ ընկ. Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ «Մեզ համար դեմոկրատիան ժողովրդի իսկական իշխանությունն է, աշխատավոր մասսաների ինքնագործունեության ու ակտիվության ըստ ամենայնի զարգացումը, նրանց ինքնավարությունը»։

Մեր երկրում սովետական ժողովուրդը իր իշխանությունը իրագործում է աշխա-

տավորների դեպուտատների Սովետների միջոցով։

Սովետները հանդիսանում են մեր պետական կարգի քաղաքական հիմքը, որոնք Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ապահովում են իսկական, ծավալուն, մինչև վերջ հետևողական սոցիալիստական դեմոկրատիայի իրականացումը։

Դեմոկրատիան ՍՍՌՄ-ում դեմոկրատիա է աշխատավորների համար, դեմոկրատիա բոլորի համար։ Ի հակադրություն բուրժուական երկրների կոնստիտուցիաների, որոնք սահմանափակում են աշխատավորների իրավունքները, ՍՍՌՄ Կոնստիտուցիան աչքի է ընկնում հետևողական և մինչև վերջ պահպանված դեմոկրատիզմով։ Բուրժուական կոնստիտուցիաների յուրաքանչյուր պարագրաֆը,— ասում է Մարքսը,— հենց իր մեջ պարունակում է իր սեփական հակադրությունը։ Իրոք նրանք խոսում են հավասար ընտրական իրավունքի մասին, որ իբր թե բոլոր քաղաքացիները օգտվում են միատեսակ իրավունքներից, բայց այդ իրավունքները սահմանափակվում են նստակեցության, կրթական, դույքային, տարիքի և բազմաթիվ այլ ցենզերով։ Միայն Ամերիկայի Միացյալ Նահանգ-



ներում գոյություն ունեն 50-ից ավել ցենզեր։ ԱՄՆ-ի յուրաքանչյուր նահանգում սահմանվում է 3 ամսից մինչև 2 տարի նստակեցության ցենզ, որը սահմանափակում է միլիոնավոր սեզոնային ու գործազուրկ բանվորների ընտրություններին մասնակցելու հնարավորությունից, որոնք իրենց ընտանիքի չարքաշ գոյությունը պահպանելու նպատակով թափառում են աշխատանք փնտրելով։ Բրիտանական կայսրության բնակչության մեծ մասը, որ ապրում է գաղութներում և դոմինիոններում, զրկված է անգլիական պառլամենտի ընտրություններին մասնակցելու իրավունքից։

Ի՞նչ ժողովրդական դեմոկրատիայի մասին կարող է խոսք լինել Ֆրանսիայում, որտեղ ռեակցիոն ուժերը 1958 թվականի դեկտեմբերի 21-ին իշխանության գլուխ կանգնեցրին գեներալ դը Գոլին, Ֆրանսիայի հինգերորդ ռեսպուբլիկայի առաջին պրեզիդենտին, որը օժտված է անսահմանափակ իրավունքներով։ Կոնստիտուցիան նրան իրավունք է վերապահում ոչ միայն նշանակելու և հեռացնելու կառավարության նախագահին, մինիստրներին, այլև վերահսկելու «դեմոկրատական» ճանապարհով ընտրված պառլամենտին, նույնիսկ ցրելու

պառլամենտը, եթե նա հրաժարվի պրեզիդենտի կամքը կատարելուց։

1958 թվականի դեկտեմբերին Ֆրանսիայում տեղի ունեցան Ազգային ժողովի ընտրություններ։ Կոմունիստական պարտիան, որը վայելում է երկրի աշխատավորների սերն ու համակրանքը, ստացավ 3 միլիոն 882 հազար ձայն, բայց Ազգային ժողովում ունի ընդամենը 10 դեպուտատ, իսկ Յունռ ռեակցիոն պարտիան ստացավ 3 միլիոն 600 հազար ձայն, այսինքն 200 հազարով պակաս, քան կոմունիստական պարտիան, բայց նա Ազգային ժողովում ունի 189 դեպուտատ, այսպիսով ստացվում է, որ Ազգային ժողովում մեկ կոմունիստ դեպուտատ ներկայացնում է 388 հազար ընտրողի, իսկ Յունռի պարտիայի մեկ դեպուտատը՝ 19 հազար 169 ընտրող։ Այսպես է դեմոկրատական ընտրական սիստեմը ոչ միայն Ֆրանսիայում, այլև բուրժուական բոլոր երկրներում։

Ի՞նչ համաժողովրդական դեմոկրատիայի մասին խոսք կարող է լինել կապիտալիստական երկրներում, երբ ԱՄՆ-ում բուրժուազիայի ձեռքումն է գտնվում ազգային բոլոր հարստությունների 79,9 տոկոսը. քաղաքացիական ի՞նչ հավասար իրավունք-



ների մասին խոսք կարող է լինել Անգլիայում, երբ բնակչության երեք քառորդը տիրապետում է ազգային հարստության միայն 7,6 տոկոսին, իսկ մի բուռ կապիտալիստներ, որոնք կազմում են բնակչության 1,6 տոկոսից էլ պակաս, իրենց ձեռքում են կենտրոնացրել ժողովրդական հարստության 66 տոկոսը։

Այսպես կոչված «ազատ աշխարհը» շահամոլության, կողոպուտի և աշխատավորների անզուսպ շահագործման, մի բուռ կապիտալիստների հարստացման արյունոտ թագավորություն է։

Բուրժուական դեմոկրատիայի երկրներում պետության քաղաքականությունը որոշում է տիրապետող ունևոր դասակարգը, որի ձեռքում էլ գտնվում է հարստությունը, փաստական իշխանությունը։

Միայն մեր և սոցիալիստական լագերի երկրներում է, որ ամբողջ իշխանությունը, երկրի բոլոր հարստությունները պատկանում են աշխատավորներին, որտեղ գոյություն ունի իսկական դեմոկրատիա։

ՍՍՌՄ-ի տերիտորիայում բնակվող յուրաքանչյուր քաղաքացի օգտվում է մեկ ձայնի իրավունքից և ակտիվորեն մասնակցում է պետական իշխանության ինչպես

բարձրագույն, այնպես էլ տեղական օրգանների՝ աշխատավորների դեպուտատների Սովետների ընտրություններին։ Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիան ռեսպուբլիկայի աշխատավորներին ապահովում է աշխատանքի, հանգստի, կրթության, նյութական ապահովության իրավունք, ծերության, ինչպես նաև հիվանդության ու աշխատունակությունը կորցնելու դեպքում նպաստ և կենսաթոշակ ստանալու իրավունք։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի չորրորդ գումարման 9-րդ սեսիայում 1959 թվականի հունվարին քննարկվեցին ռեսպուբլիկայի աշխատավորների համար կենսական նշանակություն ունեցող հարցեր, հաստատվեց յոթնամյակի առաջին տարվա՝ 1959 թվականի, ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման Պետական պլանը և Պետական բյուջեն։ 1959 թվականի Պետական բյուջեի մոտավորապես 50 տոկոսը՝ 1 միլիարդ 356 միլիոն 979 հազար ռուբլի հատկացված է սոցիալական ապահովության, առողջապահության, ժողովրդական կրթության, արվեստի և կուլտուր-կրթական հիմնարկների ֆի անսավորման համար։ Դա սովետական ժողովրդի նկատմամբ Կոմունիստական պարտիայի ու-



նեցած հոգատարության վառ ապացույցներից մեկն է։

Մեզ մոտ քաղաքացիներն ունեն խոսքի, մամուլի ազատություն, ժողովներին, միտինգներին, փողոցային երթերին ու ցույցերին ազատորեն մասնակցելու իրավունք, որպիսի սկզբունքներ բուրժուական կոնստիտուցիաներին հայտնի չէ։ Սովետական պետության Կոնստիտուցիան ստեղծում է լիակատար հնարավորություն աշխատավորության լայն մասսաների նախաձեռնության, ստեղծագործական ընդունակությունների դրսևորման ու զարգացման համար։

Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 117-րդ հոդվածի համաձայն ընտրությունների ժամանակ աշխատավորների դեպուտատների Սովետներում թեկնածուներ առաջադրելու իրավունքը պատկանում է հասարակական կազմակերպություններին և աշխատավորների ընկերություններին, պարտիական, պրոֆեսիոնալ, կոոպերատիվ, երիտասարդական կազմակերպություններին, կուլտուրական ընկերություններին։ Դեպուտատության թեկնածու առաջադրող յուրաքանչյուր կազմակերպություն, ինչպես նաև սովետական յուրաքանչյուր քաղաքացի լիակատար հնարավորու-

թյուններ ռմի ժողովներում, միտինգներում, մամուլում ագիտացիա անելու առաջադրված թեկնածուի օգտին։

Բուրժուական մի շարք երկրների կոնստիտուցիաներում խոսում են քաղաքացիների հավասար իրավունքների մասին, բայց վերապահումներ են անում կանանց նկատմամբ։ Օրինակ, մեր հարևան Իրանում, հեռավոր Գվատեմալայում, Պորտուգալիայում և մի շարք այլ երկրներում, որտեղ կանայք կազմում են բնակչության կեսից ավելին, զրկված են ընտրություններին մասնակցելու իրավունքից։ ԱՄՆ-ի 29 նահանգներում զինվորականները զրկված են ընտրական իրավունքից։

Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի ընտրական սկզբունքներին հայտնի չէ ո՛չ մի սահմանափակում, նա տարբերություն չի դնում տղամարդկանց և կանանց միջև, կանայք ընտրելու և ընտրվելու իրավունքից օգտվում են տղամարդկանց հետ հավասարապես։ Մեր Կոնստիտուցիան տարբերություն չի դնում նստակյացների և ոչ նստակյացների, ունևորների և չունևորների, գրագետների և անգրագետների իրավունքների միջև, մեր երկրում բոլոր քաղաքացի-



ները իրենց իրավունքների մեջ հավասար են։

Աշխատավորների դեպուտատների Սովետների ընտրություններին քաղաքացիները մասնակցում են անմիջականորեն՝ ուղղակի ընտրության միջոցով։ Յուրաքանչյուր ընտրող անմիջապես ձայն է տալիս դեպուտատության թեկնածուի օգտին, այս առումով էլ Սովետական ընտրական օրենքը խիստ կերպով տարբերվում է բուրժուական երկրների ընտրական օրենքներից, որտեղ պառլամենտների պալատներից մեկը կազմվում է ոչ ընտրական ճանապարհով։ Այսպես, օրինակ ԱՄՆ-ում Սենատը կազմվում է ներկայացուցչական սկզբունքով, նահանգներից յուրաքանչյուրը, անկախ բնակչության թվից, ուղարկում է երկուական սենատոր։ Անգլիայում լորդերի պալատում գերազանցապես տեղ են ստանում ժառանգաբար կամ նշանակվում են խոշոր գործարանատերերից, խոշոր հողատերերից և այլն։

Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 115-րդ հոդվածի համաձայն դեպուտատների ընտրությունը տեղի է ունենում գաղտնի քվեարկությամբ։ Սովետական ընտրողները իրենց ընտրական բյուլետենները լրացնում են բո-

լիովին գաղտնի և անձամբ գցում քվեա-տուփ։ Սովետական ընտրողի վրա կողմնակի ճնշում գործադրել չի թույլատրվում։ Ամեն ոք, ով կփորձի խանգարել ընտրողին իր ազատ ընտրական իրավունքը իրականացնելու գործում, ենթակա է խիստ պատժի։ Սովետական ընտրական օրենքը մինչև վերջ ու հետևողականորեն պահպանում է քվեարկության գաղտնիությունը։

Սովետական Հայաստանի աշխատավորները 1959 թվականի մարտի 15-ին ընտրելու են Հայկական ՍՍՌ պետական իշխանության բարձրագույն և տեղական օրգանները։ Այդ ընտրությունները ինչպես միշտ, այնպես էլ այս տարի մեր ռեսպուբլիկայում տեղի կունենան մեծ խանդավառության պայմաններում։

Լենինի շքանշանակիր ռեսպուբլիկայի աշխատավորները համախմբված հարազատ պարտիայի, նրա իմաստուն լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը, մարտի 15-ին մեկ մարդու պես իրենց ձայնը կտան կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին։

---

## ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ՝ ՄԱՐՏԻ 8-Ը

ԱՆԺԻԿ ՁԻՎԻՆԳԱՐՅԱՆ

Քառասուն ինը տարի առաջ, 1910 թվականին կին սոցիալիստների՝ Կոպենհագենում հրավիրված 2-րդ միջազգային կոնֆերանսը որոշեց Մարտի 8-ը սահմանել Կանանց միջազգային համերաշխության օր և ամեն տարի տոնել այդ օրը։ Այնուհետև Մարտի 8-ը կարծես դարձավ մի տեսակ հաշվետվությունների օր, որի ժամանակ հավաքվում էին, հաշիվ տալիս հասարակական կյանքում կնոջ քայլ առ քայլ ձեռք բերած նվաճումների մասին, հաջողությունների ու անհաջողությունների մասին, արձանագրելով դրականը, նշելով նոր խնդիրներ՝ կապված ժամանակի հետ։ Բայց աշխարհի և ոչ՝ մի երկրի, իրենց ամենադեմոկրատական համարող և ո՛չ մի կապիտալիստական երկրի կանայք չե՛ն կարող այդ օրը ասել այն, ինչ ասում են սովետական կանայք։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան փշրել է այն բոլոր կապանքները, որոնք կաշկանդում էին

կնոջը: «Մեր օրենքը,— ասել է Լենինը,— պատմության մեջ առաջինը ջնջեց այն, ինչ կնոջը դարձնում էր իրավազուրկ»:

Ինչ մասնագիտության ասես չեն տիրապետել նախկին բատրակուհիները ու տնային ծառայողները. մարդիկ, որոնց պետական և ոչ մի հիմնարկում աշխատանքի չէին ընդունում: Վերցնենք մեր փոքրիկ ռեսպուբլիկան. արդյունաբերության մեջ աշխատող բանվոր-ծառայողների մոտ 37 տոկոսը կանայք են: Կապիտալիստական այն ո՞ր երկիրը կարող է պարծենալ, որ ունի ավելի քան 730 հազարանոց կին ինժեներա-տեխնիկական անձնակազմ: Ո՛չ մի երկիր: Միայն Սովետական երկրումն է, և սոցիալիստական լագերի երկրներում, որ կինը մասնակցում է երկրի կառավարմանը:

Սովետական կանանց առաջին շարքերում է Մարիամ Բաբաջանյանը: Երկար տարիներ է, ինչ նա ղեկավարում է հսկա գործարանը: Ու՞մ հայտնի չէ հանքագործ Սաթենիկ Համբարձումյանի, տեքստիլագործ Եվգենիա Պապիկյանի անունները: Վերջինս ՍՄԿԿ XXI համագումարի պատգամավոր էր:

Հսկայական ուժ են դարձել կանայք գյուղատնտեսության մեջ. օղակավարներ են, բրիգադիրներ, կոլտնտեսության նա-



խագահներ: Հոկտեմբերյանի շրջանի միայն մեկ գյուղում՝ Թամբակաշատում ապրում և աշխատում են Սոցիալիստական Աշխատանքի հինգ Հերոս: 1628 կին գյուղատնտես և անասնաբույժ է աշխատում ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ: Կա՞ արդյոք ժողովրդական տնտեսության մի ճյուղ, ուր կանայք չաշխատեն: Առողջապահության մեջ զբաղվածների 75, լուսավորության բնագավառում աշխատողների 65 տոկոսը կանայք են: Հայաստանի լուսավորության սիստեմում աշխատում է 10.174 ուսուցչուհի, կամ 53,4 տոկոսը:

Սովետական կանանց առջև բաց են գիտության և գիտական հաստատությունների դռները: Այժմ բարձրագույն կրթությամբ մասնագետների կեսից ավելին կանայք են: 93 հազար կին գիտական աշխատողներից շատերը ունեն դոցենտի, պրոֆեսորի կոչում, գիտությունների ակադեմիաների իսկական կամ թղթակից անդամներ են: Ռեսպուբլիկայի գիտության և գիտական սպասարկման ասպարեզի 8865 աշխատողներից 2747-ը, այսինքն 31 տոկոսը, կանայք են: Ռեսպուբլիկայի այնպիսի կանայք, ինչպիսիք են քիմիական գիտությունների դոկտոր Արաքսյա Բաբայանը, Հայ-

կական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ Նվգինե Թառայանը, բիոլոգիական գիտությունների դոկտոր Դարիա Բաբայանը, բժշկական գիտությունների դոկտոր Վերգինե Միքայելյանը ճանաչված ու հարգված են Սովետական Միության մեջ։

Իրենց տաղանդն ու ստեղծագործական հիանալի կարողությունները մեր ժողովրդին ի սպաս են դնում գրականության և արվեստի կին մշակները։ Ո՞վ չի հիացել բեմի հըրաշալի վարպետ Օլգա Գուլազյանի սքանչելի խաղով, Գոհար Գասպարյանի անզուգական երգերով։

98 վաստակավոր, 22 ժողովրդական, 2 ՍՍՌՄ ժողովրդական արտիստուհիներ. Թվերն ինքնին ասում են, թե ինչ մասնակցություն ունեն մեր կանայք ռեսպուբլիկայի կուլտուրական կյանքին։

Սովետական կանանց վստահված է այնպիսի պատասխանատու աշխատանք, ինչպիսին պետական ղեկավարությունն է։ Սովետական Կոնստիտուցիան, ամենադեմոկրատական Կոնստիտուցիան աշխարհում, կանանց շնորհել է ընտրելու և ընտրվելու իրավունք, որի շնորհիվ նրանք լայնորեն ներգրավվում են պետության կառավարման գործում։ Մեր երկրի պանծալի դուստրերից



2066 հոգի ՍՍՌՄ Գերագույն Սովետի և միութենական ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների դեպուտատներ են։ Հայկական ՍՍՌ անցյալ գումարման Գերագույն Սովետում ընտրվել էին 93, իսկ տեղական սովետներում՝ 4.213 կանայք։ Հազարավոր կանայք պետական ու պարտիական ղեկավար աշխատողներ են՝ մինիստրներ, շրջկոմների քարտուղարներ և այլն։

Անցյալ տարի հայ ժողովուրդը ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատներ ընտրեց ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում աշխատող ինն առաջավոր կանանց։ Այժմ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու են առաջադրվել՝ Էլեկտրաճշգրիտ չափիչների գործարանի առաջավոր բանվորուհի Սաթիկ Մուրադյանը, Ժամացույցի գործարանի ինժեներ Աստղիկ Բաղդասարյանը, Սիսիանի Ուռուտ գյուղի կոլտնտեսուհի Գուլեյշա Իսմայիլ կզի Քյարիմովան և ուրիշներ։

Սրանք այնպիսի փաստեր են, որոնք անսահման հիացմունք են առաջ բերում ամենուրեք։ Ահա այս առթիվ ինչ է ասում Գերմանական Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայից ՍՍՌՄ այցելած կանանց պատվիրակության ղեկավար, ատոմային մահվան դեմ պայ-

քարող ընկերության նախագահության անդամ Նլենա Վեսսելը.

«Ձեր երկրի հետ ծանոթանալու ընթացքում մեզ ապշեցրեց այն, որ այստեղ կանայք զբաղեցնում են այնքան բարձր պաշտոններ։ Մեզ մոտ այդպես չէ. մենք այս ասում ենք անկեղծորեն»։

Սովետական կանայք աշխատում են ջանասիրաբար, հաղթահարում բոլոր դժվարությունները, ձգտելով ո՛չ մի բանում և երբե՛ք ետ չմնալ տղամարդկանցից։ Երկիրը արժանվույն գնահատում է նրանց աշխատանքը։ Մեր անծայրածիր հայրենիքի ավելի քան մեկ միլիոն կանայք պարգևատրված են ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով. նրանցից ավելի քան 9,6 հազարը արժանացել է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի և Սովետական Միության Հերոսի կոչման։ Միայն մեր ռեսպուբլիկայում 8.035 կին պարգևատրված է շքանշաններով ու մեդալներով, 1.216 կին՝ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի պատվոգրով։ Հայաստանի 65 կնոջ կրծքին շողշողում է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի Ոսկե աստղը։

Վերածնված երկրի կանայք ոչ միայն հարգված հասարակական գործիչներ են, այլև սիրված մայրեր։ Աշխարհի և ոչ մի



երկրում մայր կնոջ նկատմամբ չկա այնպիսի հոգատարություն, ինչպես մեզ մոտ։ Դրա ամենագեղեցիկ ապացույցն է այն, որ մոտ 59 հազար մայրերի շնորհված է «Հերոսուհի մայր» կոչում, ավելի քան 6 միլիոն մայրեր պարգևատրված են «Մայրական փառք» և «Մայրության մեդալ» մեդալներով։ Ռեսպուբլիկայում ունենք 1.262 «Հերոսուհի մայր», 105.864-ն էլ պարգևատրված է «Մայրական փառք» և «Մայրության մեդալ» մեդալներով։ Մոր և մանկան նկատմամբ ցուցաբերված ուշադրության ապացույց չէ՞ միթե այն, որ ամեն տարի միլիոնավոր ռուբլիներ են տրամադրվում բազմազավակ ու միայնակ մայրերին։ Մի՞թե այդ մասին չի խոսում հղիության և ծննդաբերության արձակուրդների երկարացումը, կրճատ աշխատօրվա անցնելը, մսուրների ու կոնսուլտացիաների հսկա ցանցը։ Նախառևոլյուցիոն Ռուսաստանում կանանց 95 տոկոսը ծննդաբերում էր առանց բժշկական օգնության, որի հետևանքով ամեն տարի 30 հազար կին էր մահանում։ Իսկ այժմ չկա մի գյուղ, ուր բժիշկ ու հիվանդանոց չլինի. միայն մեր ռեսպուբլիկայում աշխատում է 2.377 կին բժիշկ։

Սովետական մարդը իր բարեկեցությամբ,

կուլտուրական մակարդակով ամենաբարձրը պիտի լինի ամբողջ աշխարհում-ահա սրան են ուղղված ՍՄԿԿ XXI արտահերթ համագումարի պատմական նախագծումները։

1959—65 թ. թ. յոթնամյակում կոմունիստական հասարակության ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, է՛լ ավելի կբարձրանա կանանց բարեկեցությունը։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերով նախատեսվում է էլ ավելի բեռնաթափել կնոջը. բացվելու են գիշերօթիկ նոր դպրոցներ, կաթնախոհանոցներ, ընդլայնվելու են մանկապարտեզների ու մանկամսուրների ցանցը, կրճատվելու է աշխատանքային շաբաթվա տևողությունը։ Այդ բոլորի իրականացման շնորհիվ կանայք ավելի մեծ հնարավորություն կունենան մասնակցելու մեր հասարակական-քաղաքական կյանքին։

1965 թվականին մեր երկրում ազգային եկամուտը, անցյալ տարվա համեմատությամբ, աճում է 62—65 տոկոսով։ Մեկ բանվորի ռեալ եկամուտը միջին հաշվով կավելանա 40 տոկոսով։ Քաղաքներում և գյուղերում կկառուցվի և շահագործման կհանձնվի 22 միլիոն բնակարան։



Սովետական կանանց օրինակով նոր կյանք են կառուցում նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրների կանայք։ Ալբանիայում ներկայումս 17 կանայք երկրի գերագույն օրգանի դեպուտատներ են, 1614 կին քաղաքային ժողովրդական սովետների անդամներ են, 3-ը մինիստրների տեղակալներ։ Նույնպիսի պատկեր է Բուլղարիայում, Ռումինիայում, Չինաստանում և ժողովրդական դեմոկրատիայի մյուս բոլոր երկրներում։

Ահա թե ինչու այսօր Սովետական երկրին, սոցիալիստական լագերի երկրներին են ուղղված կապիտալիստական ու գաղութային երկրների կանանց հայացքները։

Կապիտալիստական երկրներում կինը ըստ էության իրավազուրկ է, նա մեկուսացված է հասարակական և քաղաքական կյանքից։ Կինը տղամարդուն հավասար չի վարձատրվում։ ԱՄՆ-ում կնոջ և տղամարդու աշխատանքի վարձատրման տարբերությունը կազմում է 15—20, երբեմն էլ 30 տոկոս։ Տղամարդու աշխատավարձի 50—60 տոկոսն է կազմում անգլիացի կնոջ աշխատավարձը, իսկ Իրանում նույն աշխատանքի համար կանայք ստանում են տղամարդկանցից 10 անգամ

պակաս։ Գործազրկությունը առաջին հերթին սպառնում է կանանց։

Ահա ինչ է գրում ԱՄՆ-ի Իլլինոյս նահանգի բնակչուհի Վիվիեն Մարքուիզը՝ Երևանի Կլարա Ցետկինի անվան կարի ֆաբրիկայի բանվորուհի Զարիկ Կարապետյանին.

«Ես կկամենայի լինել Սովետական Միությունում, որտեղ ամեն մեկը աշխատանքի իրավունք ունի։ Գերմանիայի դեմ մղված պատերազմի ժամանակ ես տղամարդու աշխատանք էի կատարում որպես կայարանի գործակալ և կայարանի հեռախոսավար։ Ես այնտեղ աշխատեցի մինչև 1948 թվականի հուլիս ամիսը. դրանից հետո մտա երեկոյան դպրոց՝ ուսումնասիրելու կարի գործը, բայց չկարողացա աշխատանք գտնել։ ... Ուստի ինձ դուր է գալիս ձեր սիստեմը»։

Մի՞թե միայն Վիվիեն Մարքուիզն է. հարյուր հազարներ են դրանք, մարդիկ, որոնք ոչ մի հույս չունեն վաղվա օրվա նկատմամբ։

Ասիայի, Աֆրիկայի երկրներում հսկայական չափերի է հասնում կանանց անգրագիտությունը։ Շատ քիչ է բարձրագույն կրթությամբ կին մասնագետների թի-



վը։ Նույնիսկ այնպիսի երկրում, ինչպիսին Անգլիան է բուհերում կանայք կազմում են սովորողների 6 տոկոսը, իսկ մեզ մոտ, մեր ռեսպուբլիկայում սովորողների կեսից ավելին կանայք են։

Ահա այս պայմաններում մեծ աշխատանք է բաժին ընկնում Կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիային, որը իր մեջ ընդգրկում է աշխարհի 80 երկրների 200 միլիոն կին աշխատավորներին, ուղղություն տալիս նրանց պայքարին։ Տարբեր է այդ կազմակերպությունների խնդիրները տարբեր երկրներում. մի տեղ հարկ է լինում պայքարել քաղցի, մեկ ուրիշ տեղ գաղութային ճնշման, մեկ այլ տեղում՝ կանանց իրավունքների սահմանափակման դեմ, բայց մեկ է բոլորի սրբազան ձգտումը՝ խաղաղություն, խաղաղություն և նորից ու նորից խաղաղություն։

Խաղաղության ու դեմոկրատիայի համար պայքարողների առաջին շարքերում են սովետական կանայք, երկրի արհեստական արբանյակների, արևի՝ աշխարհում առաջին արհեստական մոլորակն ստեղծող Սովետական մեծ Միության կանայք։

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ՍՄԿՊ XXI համագումարը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին, *զեկուցում՝ տրված պարտիայի XXI արտահերթ համագումարին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունվարի 28-ի և 29-ի համարներում։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI արտահերթ համագումարի օրագիրը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունվարի 30-ի, 31-ի և փետրվարի 1-ի, 3-ի, 4-ի, 5-ի, 6-ի և 7-ի համարներում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Եզրափակման խոսք ՍՄԿՊ XXI համագումարում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի փետրվարի 6-ի համարում։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի բանաձևը ընկեր Ն. Ս. Խրուշչովի «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման *1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին» զեկուցման առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի փետրվարի 7-ի համարում։*



Լենինյան ուղիով առա՛ջ, դեպի կոմունիզմի նաղթանակը, «Պրավդա»-ի առաջնորդողը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի փետրվարի 10-ի համարում։*

## 2. Հայկական ՍՍՌ Գերագույն և տեղական Սովետների ընտրությունները

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ *(Հիմնական օրենք)։*

ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների:

*ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆ Հայկական ՍՍՌ աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունների։*

Ընտրությունների նախապատրաստությունը ուշադրության կենտրոնում, *«Ս. Հ.»-ի 1959 թվականի փետրվարի 11-ի առաջնորդողը։*

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և տեղական Սովետների ընտրությունները, *զրույց, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1959 թվականի 3-րդ համարում։*

*Շ. Ն. ՊԵՏՐՈՍՅԱՆ*— Հայկական ՍՍՌ պետական իշխանության տեղական օրգանները, *Հայպետհրատ, 1959։*

## 3. Գերազանց ցուցանիշներով կատարենք յոթնամյակի առաջին տարվա պլանները

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սոցիալիստական արդյունաբերության և տրանսպորտի զարգացման հարցերը, ՍՄԿՊ XXI համագումարին տված զեկուցումից, առանձին գրքով, Հայպետհրատ, 1959, էջ 24—38։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Եզրափակման խոսք ՍՄԿՊ XXI համագումարում, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի փետրվարի 6-ի համարում։

Կոմունիզմի հաղթանակների ոգեշնչողն ու կազմակերպիչը, «Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի փետրվարի 3-ի համարում։

Միահամուռ հավանություն, «Ս. Հ.»-ի 1959 թվականի փետրվարի 1-ի առաջնորդողը։

Աշխատանքային հաջողություններով պատասխանենք ՍՄԿՊ XXI համագումարի որոշումներին, համառոտ տեղեկություններ ստանձնած պարտավորությունները կատարելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի փետրվարի 13-ի համարում։

## 4. Կանանց միջազգային օրը՝ մարտի 8-ը

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սովետական իշխանությունը և կնոջ դրությունը, Երկեր, հատոր 30, էջ 131—135, Հայպետհրատ, 1951։



Վ. Ի. ԼԵՆԻՆ— Բանվորուհիների միջազգային օրվա առթիվ, Երկեր, հատոր 30, էջ 519—521, Հայպետհրատ, 1951։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Կանանց միջազգային օրվա առթիվ, Երկեր, հատոր 7, էջ 54—55, Հայպետհրատ, 1949։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին, զեկուցում պարտիայի XXI արտահերթ համագումարում, առանձին գրքով, Հայպետհրատ, 1959։

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին» ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման բեզիսները և Հայաստանի Կոմունիստական պարտիայի խնդիրները, զեկուցում ՀԿՊ XX համագումարին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունվարի 11-ի համարում։

Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ